Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 6 ՄԱՐՏ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78*


ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԱՆԴԱԴՐՈՒՄ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՆԿԱՏՄԱՄԲ

## Մ. ԱՍԱՏՐՅԱՆ

*Կոմունիստական պարտիան բացի ժողովրդի շահերից ուրիշ շահեր չունի։ Նա անդադրում հոգ է տանում ժողովրդի նյութական բարեկեցությունը բարձրացնելու մասին, անում է ամեն ինչ, որպեսզի անընդհատ բարձրանա մեր երկրի աշխատավորների կենսամակարդակը։*

*ՍՄԿՊ XXI համագումարին տված զեկուցման մեջ ընկ. Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ ժամանակակից պայմաններում, երբ մեր երկրում ստեղծված են և հաջողությամբ զարգանում են հզոր արդյունաբերություն և խոշոր գյուղատնտեսություն, բոլոր հնարավորությունները կան, որպեսզի սովետական ժողովուրդը ամենամոտ ժամանակներս է՛լ ավելի լավ ապրի, ավելի լրիվ բավարարելով իր նյութական ու հոգևոր պահանջմունքները։*

Պարտիայի XXI համագումարը խնդիր դրեց զգալիորեն բարելավել բնակչության սնունդը, առանձնապես այնպիսի մթերքներով, ինչպիսիք են՝ կաթը, յուղը, միսը, շաքարը, բանջարեղենը և մրգերը։ Աշխատավորների նյութական բարեկեցությունը բարելավելու նպատակով ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը վերջերս որոշում ընդունեցին «Հասարակական սննդի հետագա զարգացման ու բարելավման մասին»։ Այդ որոշմամբ պահանջվում է մոտակա տարիներս հասարակական սնունդը դարձնել իրոք մասսայական, աշխատավորների լայն մասսաների համար մատչելի և շահավետ, հասարակական սննդի ձեռնարկությունների արտադրանքի թողարկումը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելացնել ավելի քան երկու անգամ, յոթնամյակում բաց անել 64 հազար 300 սննդի նոր ձեռնարկություն, որոնք ունենան 3 միլիոն 100 հազար նստելու տեղ։ Խնդիր է դրվում հասարակական սննդի ձեռնարկությունների արտադրանքի գներն իջեցնել սկսած 1961 թվականից։ Նույն որոշմամբ միութենական ռեսպուբլիկաների հասարակական սննդի ձեռնարկությունների համար 1959 թվականին տրամադրվելու է



«Մոսկվիչ-Ունիվերսալ» երեք հազար ավտոմոբիլ և թափք ունեցող հազար մոտոռոլերներ, մետաղյա սեղանների 300 հազար կոմպլեկտ (հիգիենիկ երեսպատումով) աթոռների հետ միասին։ 1959—1961 թվականների ժողովրդատնտեսական պլաններում նախատեսված է սննդի ձեռնարկություններին մատակարարել պլիտաներ, կերակրի կաթսաներ, ջրի եռացման հարմարանքներ, աման լվացող, միս ծեծող և բազմաթիվ այլ մեքենաներ ու հարմարանքներ։

Ինչպես տեսնում ենք մեր պարտիան ու կառավարությունը ձգտում են սովետական մարդկանց կյանքը դարձնել ավելի ուրախ ու երջանիկ։ Ժողովրդի համար բարեկեցիկ կյանք ստեղծելու մասին հոգատարությունը միշտ էլ գտնվել և գտնվում է պարտիայի ու կառավարության ուշադրության կենտրոնում։

Կենսագործելով պարտիայի և կառավարության պատմական որոշումները, մեր ռեսպուբլիկայում նույնպես խոշոր աշխատանք է կատարված հասարակական սննդի զարգացման ուղղությամբ։ Զգալիորեն ընդարձակված է հասարակական սննդի ցանցը, բարձրացված նրա հագեցվածությունը սառնարանային, տեխնոլոգիական և առև-

տրական սարքավորումներով, ավելացված խոհանոցային արտադրանքը, բարելավված բնակչության սպասարկումը։ 1958 թվականի ընթացքում շահագործման է հանձնված հասարակական սննդի 54 նոր օբյեկտ, այդ թվում 27 օբյեկտ՝ ռեսպուբլիկայի մայրաքաղաքում։

Նախատեսված է 1959 թվականին Երևան, Լենինական, Կիրովական քաղաքներում կառուցել սննդի 18 խոշոր կետ։ 1959 թվականին Երևանում շահագործման կհանձնվի 75 տեղանոց մի գեղեցիկ ամառային ռեստորան, 50 տեղանոց ավտոմատ-խորտկարան, Կիրովականում՝ 50 տեղանոց ռեստորան և այլն։

Մեծ գումարներ են նախատեսված հասարակական սննդի գործող և նոր կետերի տեխնիկական հագեցվածությանը։

Մեզ մոտ լավ են աշխատում շատ բանվորական ճաշարաններ։ «Հայէլեկտրո» գործարանում վերջերս բացվեց շատ հարմարավետ, մաքուր սարքավորված 400 տեղանոց բանվորական ճաշարանը, որտեղ բանվորներն ու ծառայողները ժամանակին ստանում են համեղ ու էժան սնունդ։

Օրինակելիորեն է աշխատում Երևանի Անասնաբուժական ինստիտուտի ճաշարա-



նը, որտեղ լավ հիմքերի վրա է դրված ինքնասպասարկումը։ Նման փաստեր ռեսպուբլիկայում շատ կան։

Սակայն լավի կողքին պետք է նշել նաև թերին։ Հասարակական սննդի զարգացման մակարդակը դեռ չի բավարարում բնակչության աճող պահանջները։ Լայն տարածում չի ստացել ճաշերի տուն բացթողումը, չափազանց սահմանափակ քանակությամբ է կատարվում բնակչությանը կիսաֆաբրիկատների և խոհանոցային արտադրանքի վաճառքը։

Երևանում խոհանոցային արտադրանք և կիսաֆաբրիկատներ վաճառվում են երկու հատուկ և 32 գաստրոնոմիական ու մթերային խանութներում։ Սակայն առևտուրը աշխուժորեն չի կատարվում, որովհետև բացակայում է ցանկալի ասորտիմենտը և միշտ չէ, որ գնորդը գոհ է մթերքների որակից։

Մեզ մոտ լուրջ թերություններ կան հասարակական սննդի ձեռնարկությունների աշխատանքի կազմակերպման գործում։ Ինչպես նշված է վերոհիշյալ որոշման մեջ, փոքր ճաշարանները և ռեստորանները, թեյարանները, սրճարաններն ու խորտկարանները անջատ ձեռնարկություններ են, որտեղ կենտրոնացված են բոլոր արտադրական

պրոցեսները՝ սկսած հումքի նախնական մշակումից և վերջացրած ճաշերի պատրաստումով։ Այդ ձեռնարկություններից յուրաքանչյուրը ստիպված պահում է իր հաստիքները, ոչ ռացիոնալ կերպով է օգտագործում իր շենքերը՝ ցեխեր, պահեստներ, գրասենյակներ կազմակերպելու, ինչպես նաև մեծ քանակությամբ տեխնոլոգիական սարքավորումներ ու գույք ունենալու համար։ Մեր ռեսպուբլիկայում այդպես են աշխատում հասարակական սննդի գրեթե բոլոր ձեռնարկությունները։ Այս այն դեպքում, երբ այդ ձեռնարկությունները կարող են աշխատել կիսաֆաբրիկատներով, որոնք նպատակահարմար է պատրաստել հատուկ կազմակերպված ցեխերում, խոհանոց-ֆաբրիկաներում կամ մսեղենի-կաթնեղենի ու սննդի արդյունաբերության ձեռնարկություններում։ Նոր որոշմամբ խնդիր է դրվում թեթևացնել ու էժանացնել հասարակական սննդի ձեռնարկությունների աշխատանքը։

Մեզ մոտ հասարակական սննդի որոշ ձեռնարկություններում սնունդը համեղ չի պատրաստվում և սպասարկման կուլտուրան ցածր է։ Երևանի, Լենինականի մի շարք ռեստորաններում և ճաշարաններում ժամանակին չեն նախապատրաստվում ձեռ-



նարկությունը բացելուն, մատուցողները չեն ծանոթանում կերակրացանկի հետ, խախտում են սպասարկման տեխնիկան։ Աշխատանք չի կատարվում սառը նախաճաշերի, քաղցր բլյուդների ռեալիզացման ուղղությամբ, վատ են ուսումնասիրում հաճախորդների պահանջները և դրանց մասին չեն տեղեկացնում խոհարարներին։

Պարտիական, սովետական, արհմիութենական կազմակերպությունները պետք է մեծ ուշադրություն դարձնեն օժանդակ տնտեսությունների հնարավորությունների օգտագործման, գյուղատնտեսական մթերքների գնման վրա, որպեսզի հասարակական սննդի ցանցում ճաշատեսակները էժանացվեն և բազմազանություն մտցվի։

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմում և Մինիստրների Սովետում մեծ միջոցառումներ են մշակվում հասարակական սննդի հետագա զարգացման և բարելավման ուղղությամբ՝ ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշման կատարման լույսի տակ։

Բարձրացնելով հասարակական սննդի ձեռնարկությունների աշխատանքի մակարդակը պարտիական, սովետական կազմակերպությունները միշտ հիշում են Վ. Ի.

Լենինի խոսքերը, որը հասարակական ճաշարաններն անվանում էր «կոմունիզմի ծիլեր»: Վ. Ի. Լենինը ընդգծում էր, որ այդ ճաշարանները «... իրոք ընդունակ են ազատագրել կնոջը, իրոք ընդունակ են նվազեցնել և ոչնչացնել նրա անհավասարությունը տղամարդու հետ՝ հասարակական արտադրության և հասարակական կյանքի մեջ ունեցած դերի տեսակետից»:

«Այժմ,— ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը, — մենք արդեն ունենք ոչ թե առանձին ծիլեր, այլ կոմունիստական տիպի զանազան կազմակերպությունների մի ամբողջ սիստեմ, և մեր պարտականությունն է բազմապատկել այդ կազմակերպությունները, բարելավել ու կատարելագործել դրանց աշխատանքը»:

---

# ՅՈԹՆԱՄՅԱԿԸ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆՆ ԱՄՐԱՊՆԴԵԼՈՒ ՀԶՈՐ ՄԻՋՈՑ Է

Լ. ԿԱՐՅԵՎ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարը քննարկեց և հավանություն տվեց Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կոնտրոլ թվերին:

ՍՄԿՊ XXI համագումարի աշխատանքին չթուլացող ուշադրությամբ հետևում էր ամբողջ աշխարհը: Սովետական յոթնամյակի կոնտրոլ թվերը մանրակրկիտ ձևով ուսումնասիրում են ինչպես մեզ բարեկամ, այնպես էլ ոչ բարեկամ երկրներում: Հարյուր հազարավոր հասարակ մարդիկ բոլոր երկրներում մեր ժողովրդի հետ միասին չտեսնված վերելքի զգացում են ապրում:

Ինչո՞ւ աշխարհի բոլոր աշխատավորները այդքան մոտ են ընդունում իրենց սրտին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը: Որովհետև մեր

յոթնամյակը հսկայական միջազգային նշանակություն ունի։ Որովհետև յուրաքանչյուր աղյուսը, որ մենք դնում ենք կոմունիզմի մեծ կառուցմանը մի նոր լուրջ պրգելք է հանդիսանում իմպերիալիստական ուժերի ճանապարհին։

Կար ժամանակ, որ Սովետական երկիրը որպես սոցիալիզմի միայնակ փարոս կանգնած էր կապիտալիստական աշխարհի օվկիանոսում։ Բայց այն ժամանակ էլ Սովետական Միությանն էին բևեռված աշխարհի բոլոր ընչազուրկ ժողովուրդների, բոլոր աշխատավորների հայացքները։ Բուրժուական պրոպագանդան մեր հնգամյակները անվանում էր անիրագործելի։ Բուրժուական վարձու պրոպագանդիստները օգտվում էին մեր դժվարություններից։

Այժմ սոցիալիզմը մեր երկրում տարել է ոչ միայն լրիվ, այլև վերջնական հաղթանակ։ Մենք այլևս միայնակ չենք։ Սոցիալիզմի կառուցման ճանապարհով են ընթանում Եվրոպայի ու Ասիայի շատ ժողովուրդներ։ Սոցիալիզմը դարձել է հզոր համաշխարհային սիստեմ։ Գոյացել է սոցիալիստական երկրների մի հզոր լագեր, որը միավորում է գրեթե մեկ միլիարդ մարդկանց, որոնք լի են անսպառ ստեղծագործական էնտուզիազմով։



Կապիտալիստականի նկատմամբ սոցիալիստական կարգերի առավելությունը օրավուր ավելի ու ավելի ակնառու է դառնում։

Սովետական Միության յոթնամյա պլանը նախատեսում է էկոնոմիկայի աճման բարձր տեմպեր, որը թույլ է տալիս վճռական քայլ կատարել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և կապիտալիստական երկրների հետ խաղաղ տնտեսական մրցության մեջ ՍՍՌՄ հաղթանակի ապահովման գործում։ Ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման առթիվ ՍՄԿՊ XXI համագումարի ընդունած բանաձևում ասվում է. «Մեր նվիրական նպատակը արդեն մոտ է։ Մենք պետք է անցնենք կապիտալիզմի հետ տնտեսական խաղաղ մրցության վճռական էտապը, շատ կարճ ժամկետում շահենք այդ մրցությունը։ Մենք ունենք այն ամենը, ինչ անհրաժեշտ է այդ սահմանագիծը գրավելու համար»։

Այո, մենք դրա համար ունենք բոլոր անհրաժեշտը։ Սովետական ժողովուրդը իր տիտանական աշխատանքով մեր երկիրը բարձրացրեց մի այնպիսի բարձունքի, որ տնտեսական բնագավառում նա կարող է այժմ հաջողությամբ մրցել ԱՄՆ-ի հետ, այդ

մրցությունը շահել և իրենից ետ թողնել կապիտալիզմի գլխավոր երկիրը։

Սովետական ժողովրդի կողմից իր յոթնամյա պլանի հաջող կատարումը է՛լ ավելի կամրապնդի սոցիալիստական լագերի հզորությունը։ Ուստի, սոցիալիզմի եղբայրական երկրների ժողովուրդները մեր յոթնամյակն ընդունեցին որպես իրենց սեփականը։ Այս միտքը պարզ ու լավ է արտահայտել չինական որմնադիր Ջժան Գույ-խեն. «Յոթնամյակի թվերը մեզ հուզում են այն պատճառով, որ Սովետական Միության ուղին—մեր ուղին է... Մենք և սովետական ժողովուրդը նույն նպատակը, նույն խնդիրները ունենք, և մենք միասին ընթանում ենք հաղթանակների ուղիով»։

Սոցիալիստական լագերի բոլոր երկրների տնտեսական զարգացումը առաջ է ընթանում յոթմղոնանոց քայլերով։ Այսպես, օրինակ, ՉԺՌ-ի արդյունաբերական արտադրանքը 1950—1958 թվականների ընթացքում ավելացել է մոտավորապես տասն անգամ։ Այսպիսի թափը նույնիսկ ամենազարգացած կապիտալիստական երկրների ուժերից վեր է։ Ընթացիկ տարում խոշոր հաջողությունների են հասել սոցիալիզմի նաև մյուս երկրները։



Հենվելով փոխադարձ օգնության վրա, իրենց պլանները միմյանց հետ կոորդինացնելով, եղբայրական սոցիալիստական երկրները, անկասկած կհասնեն է՛լ ավելի աչքի ընկնող հաջողությունների։ Սովետական յոթնամյակը նրանց ներարկում է նոր կենսատու ուժեր։Տնտեսագետների հաշվումների համաձայն, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կատարման և գերակատարման, ինչպես նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների տնտեսության զարգացման բարձր տեմպերի շնորհիվ համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրները կարտադրեն ամբողջ համաշխարհային արդյունաբերական արտադրանքի կեսից ավելին։ Իսկապես ոգևորող հեռանկար է։ Նա լավագույն ապագայի հույս է ներշնչում ամբողջ աշխարհի հարյուր միլիոնավոր հասարակ մարդկանց, որոնք դեռևս իրենց վրա կրում են կապիտալիստական շահագործման ծանր ճնշումը։ Նա ամրապնդում է խաղաղության կողմնակիցների ուժերը և թուլացնում իմպերիալիստական ռեակցիայի ու պատերազմի ուժերը։

Յոթնամյա պլանի իրագործումը Սովետական Միության աշխատավորների կողմից իր ինտերնացիոնալ պարտքի կատարման մի

նոր ապացույց կլինի համաշխարհային բանվորական և կոմունիստական շարժման, ողջ պրոգրեսիվ մարդկության նկատմամբ։ Կոմունիստական հասարակության կառուցման նոր հաջողությունները բարոյական հզոր աջակցություն կլինեն հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալական պրոգրեսի պայքարող բոլոր ուժերի համար։

Այժմ երկրագնդի բոլոր ողջախոհ մարդիկ կայուն և երկարատև խաղաղության հաստատման իրենց հույսերը կապում են ոչ թե Արևմուտքի կապիտալիստական տերությունների կողմից կիրառվող «սառը պատերազմի» ավանտյուրիստական քաղաքականության, այլ Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների հետևողական խաղաղասիրական արտաքին քաղաքականության հետ, որի հիմքում ընկած է տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ համագործակցության լենինյան սկզբունքը։

ՍՄԿՊ XXI համագումարին Ն. Ս. Խրուշչովի տված զեկուցման մեջ համոզչորեն ցույց է տրված, որ Սովետական Միության և Եվրոպայի ու Ասիայի բոլոր սոցիալիստական երկրների տնտեսական պլանների իրականացման շնորհիվ ռեալ հնարավորու-



թյուններ կստեղծվեն կանխելու համար պատերազմը որպես միջազգային հարցերի լուծման միջոց։

«Եվ իսկապես,— ասաց Ն. Ս. Խրուշչովը,— երբ ՍՍՌՄ-ը կվերածվի աշխարհի արդյունաբերական առաջին տերության, երբ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան կդառնա հզոր ինդուստրիալ տերություն, իսկ սոցիալիստական բոլոր երկրները միասին կթողարկեն համաշխարհային արդյունաբերական արտադրանքի կեսից ավելին, միջազգային իրադրությունը արմատապես կփոխվի։ Սոցիալիստական լագերի երկրների հաջողությունները, անշուշտ, հսկայական ազդեցություն կգործեն ամբողջ աշխարհի խաղաղասիրական ուժերի ամրապնդման վրա։ Կարելի է չկասկածել, որ մինչ այդ խաղաղության ամրապնդման համար հանդես եկող պետություններին կմիանան գաղութային ճնշումից ազատագրված նոր երկրներ։ Ժողովուրդների գիտակցության մեջ է՛լ ավելի խոր կերպով կարմատավորվի պատերազմի անթույլատրելիության գաղափարը։ Ուժերի նոր հարաբերակցությունը այնքան ակներև կլինի, որ նույնիսկ առավել պնդաճակատ իմպերիալիստների համար պարզ կդառնա սոցիալիստական լագերի դեմ

պատերազմ սանձազերծելու ամեն մի փորձի անհուսալիությունը։ Հենվելով սոցիալիզմի լագերի հզորության վրա, խաղաղասեր ժողովուրդները այն ժամանակ կկարողանան իմպերիալիզմի ռազմամոլ շրջաններին ստիպել, որ նրանք հրաժարվեն նոր համաշխարհային պատերազմի պլաններից։

Այդպիսով, դեռ մինչև երկրագնդում սոցիալիզմի լիակատար հաղթանակը, երբ աշխարհի մի մասում դեռ կապիտալիզմը կպահպանվի, ռեալ հնարավորություն կստեղծվի համաշխարհային պատերազմը վերացնելու հասարակության կյանքից»։

Ուրեմն, սովետական յոթնամյակի, ինչպես նաև սոցիալիստական մյուս երկրների ժողովրդատնտեսական պլանների իրականացումը վիթխարի դեր կխաղա արդիականության արմատական պրոբլեմի՝ համընդհանուր խաղաղության պահպանման լուծման գործում։

ՍՄԿԿ XXI համագումարը լիովին արդարացրեց նրանց հույսերը, ում թանկ է խաղաղության բախտը։ Համագումարի բանաձևում ասված է, որ առաջիկա յոթնամյակում միջազգային հարաբերությունների բնագավառում մեր պարտիայի գլխավոր խնդիրները հանդիսանում են՝ արտաքին



քաղաքականության հետևողական կիրառումը, որն ուղղված է խաղաղության պահպանմանն ու ամրապնդմանը և ժողովուրդների անվտանգությանը՝ հիմնված տարբեր սոցիալական սիստեմներ ունեցող երկրների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքի վրա. «սառը պատերազմի» դադարեցման և միջազգային լարվածության թուլացման կուրսի իրականացումը. համաշխարհային սոցիալիստական սիստեմի և եղբայրական ժողովուրդների համագործակցության ամեն կերպ ամրապնդումը։

Համաշխարհային հասարակայնությունը գոհունակությամբ նշեց, որ պարտիայի XXI համագումարին Ն. Ս. Խրուշչովի տված զեկուցման մեջ զգալի տեղ է հատկացված եղել այնպիսի կարևոր միջազգային պրոբլեմներին, ինչպիսիք են՝ Գերմանիայի հետ հաշտության պայմանագիր կնքելը և Եվրոպայում լարվածության թուլացումը. խաղաղության գոտու, և առաջին հերթին Հեռավոր Արևելքում և ողջ Խաղաղօվկիանոսյան ավազանում ատոմային զենքից զերծ գոտու ստեղծումը. զինաթափման և ատոմային ու ջրածնային զենքի փորձարկումների արգելման հարցը. համաշխարհային առևտրի լայն զարգացման հարցը։





Սովետական մարդկանց առջև կանգնած ժողովրդատնտեսական խնդիրների հսկայական մասշտաբը արդեն ինքնին երկարատև ու կայուն խաղաղության նկատմամբ մեր ունեցած խոր շահագրգռվածության համոզիչ վկայությունն է։ Սովետական յոթնամյա պլանի վիթխարի թվերի ֆոնի վրա առանձնապես ծիծաղելի են կապիտալիստական աշխարհի վարձու բուրժուական պրոպագանդիստների և որոշ պետական գործիչների պնդումները Սովետական Միության «ագրեսիվ ձգտումների» մասին։ Սովետական պետությունը կապիտալիստական երկրների դեմ ագրեսիայի պլաններ կառուցելու անհրաժեշտություն չունի։ Նա առանց այդ էլ համոզված է կապիտալիստական կարգերի պատմականորեն անխուսափելի կործանման մեջ։ Սովետական Միությունը համոզված լինելով սոցիալիստական սիստեմի առավելության մեջ, կապիտալիստական աշխարհին առաջարկում է. եկեք մըրցենք տնտեսական ասպարեզում՝ ժողովըրդին ավելի շատ նյութական բարիքներ, հոգևոր աճի համար ավելի մեծ հնարավորություններ տալու գործում և տեսնենք, թե ժողովուրդները ո՛ր հասարակարգը կնախընտրեն՝ կապիտալիզմը թե սոցիալիզմը



«Մենք վստահ ենք,— ասաց Ն. Ս. Խրուշչո-
վը իր եզրափակման խոսքում, XXI համա-
գումարում,— որ ժողովուրդները ճիշտ ընտ-
րություն կկատարեն, ընդ որում այդ ընտ-
րությունը կկատարեն առանց պետություն-
ների միջև պատերազմ սանձազերծելու, ա-
ռանց ջրածնային և ատոմային ռումբերի»։
Սովետական յոթնամյա պլանը ոչ քիչ
անհանգստություն առաջ բերեց «կապիտա-
լիստական դրախտի» քարոզիչների մոտ։
«Սա,— գրել է անգլիական «Դեյլի տելե-
գրաֆ» պահպանողական թերթը,— խաղաղ
մրցության քաղաքականություն է, որը
Անգլիայում ձախերից շատերը և աջերի
ոչ փոքր թիվ կհամարեն հրապուրող»։ Իսկ
անդրօվկիանոսյան «Նյու-Յորք թայմս»-ը
վհատված արձանագրել է, որ «ԱՄՆ-ի
տնտեսական աճի դանդաղ թափը հիմք է
տալիս ենթադրելու, որ Սովետները կարող
են շահել մրցությունը»։
Բնորոշ է, որ այն ժամանակ, երբ ՍՄԿՊ
XXI համագումարը քննարկում էր մեր եր-
կրի խաղաղ շինարարության պլանը և նո-
րից հաստատեց սովետական արտաքին
քաղաքականության խաղաղասիրական
բնույթը, Արևմուտքում, և առաջին հերթին
ԱՄՆ-ում, որոշ և միանգամայն ազդեցիկ

շրջաններ հերթական ռազմական աղմուկ բարձրացրին։ Բեմ բարձրացվեցին հայտնի և անհայտ գեներալներ, որոնք սրճի մրուրում գուշակություն էին անում Սովետական Միության դեմ պատերազմ ծագելու դեպքում ԱՄՆ-ի հեռանկարների մասին։ Հասկանալի է, նրանք ամեն կերպ ձգտում էին ապացուցել, որ այդպիսի պատերազմ շահելու իրենց շանսերը զգալիորեն բարձր են։ Կարիք չկա հանգամանորեն կանգ առնել նոր պատերազմի պրովոկատորների ցինիկ դատարկախոսության վրա։ Նրանց և նրանց հովանավորողներին արժանի պատասխան տվեց Ն. Ս. Խրուշչովը, որը XXI համագումարի տրիբունայից հիշեցրեց, թե Սովետական Միությունն այժմ միջոցներ ունի, որպեսզի խորտակիչ հարված հասցնի ագրեսորին՝ երկրագնդի ուզածդ կետում։ «Մենք, — ասաց նա,— դիպուկ խոսք ասած լինելու համար չէ, որ հայտարարում ենք, թե մեզ մոտ կազմակերպված է միջմայրցամաքային բալիստիկ հրթիռների սերիական արտադրություն։ Եվ այդ բանը ասում ենք ոչ թե որևէ մեկին սպառնալու համար, այլ գործերի իսկական դրության մեջ պարզություն մտցնելու համար»։

Սովետական ժողովուրդը միահամուռ



կերպով պաշտպանում է իր պետության խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը, որը հավանության արժանացավ ՍՄԿԿ XXI համագումարի կողմից։ Նա հպարտանում է, որ մեր Հայրենիքի օրավուր աճող հաջողությունները տանում են դեպի ամբողջ աշխարհի խաղաղասիրական ուժերի ամրապնդումը։ Ամբողջ սրտով արձագանքելով Կոմունիստական պարտիայի՝ հանուն կոմունիզմի կառուցման վեհ նպատակի անխոնջ աշխատելու կոչին, սովետական յուրաքանչյուր մարդ հասկանում է, որ իր անձնազոհ աշխատանքով նա ամրապնդում է խաղաղությունն ամբողջ աշխարհում։

---

# ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԸ ԵԿԱՄՏԱԲԵՐ ԿՈՒԼՏՈՒՐԱ Է

Ա. ՂՈՒԿԱՍՅԱՆ

Մեր երկրում եգիպտացորենի կուլտուրայի նկատմամբ անհրաժեշտ ուշադրություն նվիրվեց միայն վերջին տարիներս՝ գյուղատնտեսության շեշտակի վերելք ստեղծելու վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումի որոշումից հետո։ Այժմ այդ արժեքավոր կուլտուրան իր պատշաճ տեղն է գրավում հատիկային կուլտուրաների ցանքատարածությունների մեջ։

«Եթե կոլտնտեսությունների մեծ մասը,—ասում է ընկ. Խրուշչովը,—եգիպտացորենի ցանքերի յուրաքանչյուր հեկտարից աճեցնեն ոչ թե 700—800, այլ թեկուզ 250—300 ցենտներ կանաչ մասսա, ապա դա բավական կլիներ մեկ հեկտար ցանքի դիմաց 225—260 կիլոգրամ կարագ ստանալու համար»։

Կոլտնտեսություններն արդեն փորձով



համոզվել են, որ եգիպտացորենը ոչ միայն ամենաբերքատու, այլև ամենաօգտակար կուլտուրան է։ Այդ է պատճառը, որ նրանք ոչ բերքատու կուլտուրաները փոխարինում են եգիպտացորենով, որը կոլտնտեսային հարստությունը բազմապատկելու հուսալի ռեզերվ է։

Եգիպտացորենը լինելով հատիկային և կերային կարևորագույն կուլտուրա պայմաններ է ստեղծում կարճ ժամկետում գյուղատնտեսության էկոնոմիկան փոխելու, կոլտնտեսային ապրանքային արտադրությունը բարձրացնելու և կոլտնտեսականների նյութական բարեկեցությունը բարելավելու գործում։ Ահա մի քանի բնորոշ օրինակներ եգիպտացորենի շահավետության մասին։ Եթե շաքարի ճակնդեղի մեկ հեկտարից միջին հաշվով ստացվում է 200 ցենտներ արմատ և 100 ցենտներ փրեր, որոնք իրենց մեջ պարունակում են 7.000 կերային միավոր, ապա սիլոսային եգիպտացորենի (ցողունները կողրերի հետ միասին մոմային հասունության շրջանում) մեկ հեկտարից ստացվում է 275 ցենտներ, որն իր մեջ պարունակում է 5.775 կերային միավոր, կամ կերի կարտոֆիլը, որը մեկ հեկտարից տալիս է միջին հաշվով 175 ցենտներ բերք և իր մեջ պարու-

նակում է 5.250 կերային միավոր, իսկ եգիպտացորենի մեկ հեկտարից միջին հաշվով ստացվում է 200 ցենտներ կանաչ մասսա, որն իր մեջ պարունակում է 3.600 կերային միավոր և այլն։

Ինչպես տեսնում ենք միայն շաքարի ճակընդեղն է, որ առավելություններ ունի եգիպտացորենի նկատմամբ։ Սակայն պետք է հաշվի առնել, որ շաքարի ճակնդեղի մեկ հեկտարի մշակման վրա 5 անգամ ավելի և կարտոֆիլի մեկ հեկտարի մշակման վրա ավելի քան երկու անգամ շատ ծախս է կատարվում, քան եգիպտացորենի մեկ հեկտարի մշակման և նրա սիլոսացման վրա։

Սակայն դրանից չի հետևում, որ եգիպտացորենը պետք է դուրս մղի մյուս բոլոր կուլտուրաները։ Ընդհակառակը, անասնաբուծության զարգացման համար չափազանց անհրաժեշտ է կերերի բազմազանությունը։ Ելնելով դրանից խիստ անհրաժեշտություն է զգացվում ավելացնել կերի կարտոֆիլի, շաքարի և կերի ճակնդեղի, կերի կաղամբի, երեքնուկի, առվույտի և շատ այլ կուլտուրաների արտադրությունը։

Որպես ֆուրաժային կեր եգիպտացորենի հատիկները սննդարարության տեսակետից գերազանցում են հատիկային մյուս կուլտու-



րաների սննդարարությունը։ Տարեկանի մեկ կիլոգրամը իր սննդարարությամբ հավասար է 1,18 կերի միավորի, մեկ կիլոգրամ գարին՝ 1,26, իսկ մեկ կիլոգրամ եգիպտացորենը՝ 1,34 կերի միավորի։

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները նույնպես փորձով համոզվել են, որ եգիպտացորենը բարձրարժեք և եկամտաբեր կուլտուրա է։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի XX համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Ս. Հ. Թովմասյանը նշեց, որ դաշտային կերարտադրության տարածությունների ընդարձակումը պետք է զուգակցվի կերի կուլտուրաների բերքատվության սիստեմատիկ բարձրացման հետ, որոնք ապահովեն հեկտարից առնվազն 45—50 ցենտներ բազմամյա խոտաբույսերի միջին բերք և 300—350 ցենտներ սիլոսային մասսա։

Շամշադինի շրջանի կոլտնտեսությունները 1956 թվականին ցանել էին 911 հեկտար, 1957 թվականին՝ 939, իսկ 1958 թվականին՝ 1022 հեկտար եգիպտացորեն և համապատասխանաբար բարձրացրել ինչպես հատիկային, այնպես էլ կանաչ

մասսայի բերքը։ Նորաշեն գյուղի կոլտնտեսության օրինակը, որը եգիպտացորենի մշակությունն սկսել է 1954 թվականից, եզակի չէ։ 1956 թվականից կոլտնտեսությունը դարձավ եգիպտացորենի սերմնաբուծական տնտեսություն։ 55 հեկտար տարածության վրա մշակեց եգիպտացորենի ՎԻՐ—40 տեսակը, որը տեղի պայմաններում բարձր բերք է տալիս, կոլտնտեսությունը 1958 թվականին մեկ հեկտարից ստացավ 70 ցենտներ հատիկի բերք՝ նախատեսված 27 ցենտների դիմաց և մեծ քանակությամբ սիլոսային մասսա, առանձնացվեց 17 տոննա սերմացու։

Եգիպտացորենը մեծ չափով բարձրացրեց կոլտնտեսության եկամուտները։ Եթե 1953 թվականին (երբ եգիպտացորեն չէր մշակվում) ֆուրաժային կովի կաթնատվությունը կազմում էր 630 կիլոգրամ ապա 1958 թվականին այն հասավ 1.500 կիլոգրամի, եթե առաջներում կոլտնտեսությունը շատ քիչ խոզ էր պահում, ապա եգիպտացորենի շնորհիվ մսամթերման 30—40 տոկոսը տրվեց խոզի մսով, իսկ դրամական եկամուտն աճեց մեկ միլիոն ռուբլով։

Եգիպտացորենի մշակության ասպարեզում ծախսված յուրաքանչյուր աշխօրը տվել է 80 ռուբլու եկամուտ։



Եգիպտացորենի բարձր բերք է ստացվել նաև Ալավերդու շրջանի Ղաչաղան գյուղի «Լենինաշեն» կոլտնտեսությունում։ Այստեղ անջրդի պայմաններում եգիպտացորենի յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 90 ցենտներ հատիկ և 400—500 ցենտներ սիլոսային մասսա։

Նույն շրջանի Թումանյան գյուղի կոլտնտեսությունը եգիպտացորենի շնորհիվ, 1953 թվականի համեմատությամբ, 1958 թվականին կրկնակի չափով ավելացրեց կաթի, մսի և բրդի արտադրությունը։

Եգիպտացորենի օգտավետության մասին մեր ռեսպուբլիկայի առօրյայից նման օրինակներ շատ կարելի է բերել։

Եգիպտացորենի լայն զարգացումը կընպաստի անասնաբուծության զարգացման 7-ամյա պլանի ժամկետից շուտ կատարմանը։

---

# ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ԲԱՐՁՐ ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Ա. ԴԱՎԹՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության գլխավոր գյուղատնտես

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI արտահերթ համագումարին ընկեր Խրուշչովի տված զեկուցման մեջ մանրամասնորեն շարադրված են մեր ժողովրդական տնտեսության հետագա բուռն զարգացման խնդիրները։ Յոթնամյա պլանի համաձայն արդյունաբերության հետ միասին խիստ զարգացում է ստանալու նաև գյուղատնտեսությունը, մասնավորապես անասնաբուծությունը։ 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, մսի արտադրությունը մեր ռեսպուբլիկայում պետք է ավելանա 1,7 անգամ, կաթինը՝ 1,6 անգամ, զգալի չափով կավելանան նաև բրդի, ձվի և մյուս տեսակի մթերքների արտադրությունը։*



*Առաջավոր կոլտնտեսությունների և սովխոզների պրակտիկան ցույց է տալիս, որ մեր պայմաններում անասնաբուծական մթերքների՝ կաթի, մսի, բրդի և մյուս տեսակների արտադրանքի մոտ հիսուն տոկոսը ստացվում է ձմռան մսուրային շրջանում։*

*Հայտնի է, որ ձմռան մսուրային ժամանակաշրջանում է հիմնականում տեղի ունենում կովերի և ոչխարների, ինչպես նաև մյուս տեսակի անասունների ծինը։ Հետևապես մթերքների արտադրության, ինչպես նաև անասունների գլխաքանակի ավելացման հարցը սերտորեն կապված է անասունների ձմեռումը լավագույն ձևով կազմակերպելու և անցկացնելու հետ։*

*Դրա համար անհրաժեշտ է, որ կոլտնտեսությունների և սովխոզների անասնապահական ֆերմաներում լավ հիմքերի վրա դրվեն անասունների կերակրման և խնամքի գործը, ճշտորեն կազմակերպվեն զոոտեխնիկական և կազմակերպչական բոլոր աշխատանքները։*

*Մսուրային շրջանում կարևոր հարցերից է կերերի ռացիոնալ օգտագործումը։ Անհրաժեշտ է լուրջ հսկողության տակ վերցնել խոտի, ծղոտի, դարմանի, սիլոսի, ինչպես նաև կերի մյուս տեսակների ծախսումը։*

Դրանք պետք է բաց թողնվեն բացառապես հաշվապահական ելքի օրդերներով, անասունների օրվա կերաբաժիններին համապատասխան։

Կոլտնտեսություններում և սովխոզներում կերերի ծախսումը ճիշտ կատարելու և անասնաբուծական մթերքների ստացումը ապահովելու նպատակով, կոլտնտեսությունների մասնագետների, ֆերմաների վարիչների հետ համատեղ, յուրաքանչյուր տասնօրյակ պետք է վերանայվեն անասուններին տրվող կերերի քանակն ըստ առանձին տեսակների։ Անասունների օրվա կերաբաժինները մշակելիս պետք է ելնել նրանց կենդանի քաշից, մսուրային շրջանի օրերի տևողությունից և անասունների մթերատվությունից։

Կերերի էֆեկտիվությունը բարձրացնելու նպատակով դրանք անասուններին պետք է տրվեն նախօրոք պատրաստված և վերամշակված վիճակում, հացահատիկների ծղոտը որպես կոշտ կեր պետք է տրվի մանրացված, աղաջրով կամ կրաջրով, փափկացրած, իսկ խոտի որոշ կոպիտ տեսակներ, ինչպես նաև արմատապտուղներն ու հատիկային կերերը մանրացված կամ եփած վիճակում։

Հետևապես կոլտնտեսություններում կե-



րեր մշակող մեքենաները՝ ծղոտահատները, կերախաշիչները, արմատակտրիչները և մյուսները պետք է պահել սարքին վիճակում։

Հայտնի է, որ չոր, լուսավոր և տաք անասնաշենքերում անասունների ձմեռումը նպաստում է անասնապահական մթերքների արտադրության ավելացմանը և անասնակերերի տնտեսաբար ու նպատակային ծախսմանը։ Կոլտնտեսությունների վարչությունները և ֆերմաների վարիչները պետք է հոգ տանեն անասնաշենքերը բարեկարգ և լուսավոր պահելու համար։ Բարեկարգ և մեքենայացված անասնաշենքերը միաժամանակ թեթևացնում են կոլտնտեսականների ֆիզիկական աշխատանքը։

Անասունների մսուրային շրջանում, առանձնապես այն անասնաշենքերում, որտեղ տեղավորված է մայրական կազմը, պետք է սահմանել մշտական հերթապահություն՝ կովերի և ոչխարների ծինը կազմակերպված ու անկորուստ անցկացնելու համար։

Մյուս կարևոր հարցերից մեկն էլ մատղաշ անասունների լավ խնամքի կազմակերպումն է։ Անհրաժեշտ է բոլոր մատղաշներին իր ժամանակին տեղավորել չոր, լուսավոր և միջանցիկ քամիներից պաշտպանված շեն-

քերում, որովհետև մատղաշի հոգատար խնամքից և անկորուստ պահպանումից է կախված հոտի հետագա աճը։

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների անասնապահական ֆերմաներում լայն կիրառում է ստացել նորածին հորթերին մորից անջատ կերակրելու առաջավոր մեթոդը, որը մեծ արդյունք է տալիս։ Միայն անհրաժեշտ է, որ կոլտնտեսությունների վարչությունները հոգ տանեն կովաբուծական բոլոր ֆերմաները կաթնածծիչներով ապահովելու համար։

Խիստ կարևոր նշանակություն ունի անասնապահական ֆերմաները կոմպլեկտավորել իրենց գործը տիրապետող, աշխատանքի մեծ փորձ ունեցող բարեխիղճ անասնապահներով, կովկիթներով, հորթապահներով, հովիվներով, խոզապահներով։ Անասնապահների լավ աշխատանքից, գործիմացությունից ու հոգատար վերաբերմունքից է կախված անասնաբուծության մթերատվությունը, հոտի աճը, անասունների անկումների կանխումը։ Այդ տեսակետից օրինակ կարող են ծառայել Ղուկասյանի, Գորիսի, Ամասիայի, Մարտունու և այլ շրջանների շատ անասնապահական ֆերմաներ։

Այս օրերին կոլտնտեսությունների սկզբ-



նական պարտիական կազմակերպությունների, ագիտատորների խնդիրն է քաղաքական մասսայական լայն աշխատանք ծավալել անասնապահների շրջանում, հետևողականորեն պարզաբանել պարտիայի XXI համագումարի որոշումները անասնաբուծության զարգացման վերաբերյալ, մոբիլիզացնել նրանց ուժերը յոթնամյա պլանով առաջադրված խնդիրները հաջողությամբ կատարելու, մեր երկրում անասնաբուծական մթերքների առատություն ստեղծելու համար։

---

# ՈՒԼՏՐԱՁԱՅՆԸ ԵՎ ՆՐԱ ԿԻՐԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Դոցենտ՝ Գ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

*Ժամանակակից ֆիզիկայի չափազանց եռանդուն և արագ զարգացող բաժիններից մեկը ուլտրաակուստիկան է (ուսմունք ուլտրաձայների մասին), որը բազմապիսի կիրառություններ ունի կենցաղում, գիտության ու տեխնիկայի բնագավառում։*

*Ակուստիկայում ուլտրաձայնային տատանումների տակ հասկացվում են այնպիսի տատանումները, որոնք գերազանցում են մարդկային լսողության վերին սահմանը (20.000 տատանում մեկ վայրկյանում)։ Այդ պատճառով էլ նրանք հանդիսանում են անլսելի ձայներ։ Ներկայումս հաջողվել է ստանալ մեկ վայրկյանում մոտ մեկ միլիոնից բարձր տատանում։*

*Ուլտրաձայնային ալիքները, ինչպես և սովորական ձայնային ալիքները, երկայնական ալիքներ են։*



*Որպեսզի պատկերավոր լինի ուլտրաձայնային տատանման բարձրությունը, բավական է այն համեմատել սովորական լսելի ձայնի (16-ից մինչև 20.000 տատանում մեկ վայրկյանում) բարձրության հետ։ Այսպիսով, ուլտրաձայնային ամենակարճ ալիքի երկարությունը կարելի է համեմատել տեսանելի լույսի ալիքի երկարության հետ։*

*Լսելի ձայնի ակուստիկական օրենքները ուժի մեջ են մնում նաև անլսելի, ուլտրաձայնային տատանումների համար։ Ուլտրաձայնային ալիքների չափազանց կարճության պատճառով, մարդը նրան չի կարողանում լսել, բայց օպտիկական հատուկ եղանակներով նրանց կարելի է տեսնել, ֆոկուսացնել, տարածման ուղղությունը փոխել ու այն օգտագործել բազմաթիվ նյութերի բնորոշ հատկությունները որոշելու գործում։ Ալիքի կարճությունը հնարավորություն է տալիս ուլտրաձայնային ալիքներին դյուրին կերպով թափանցելու պինդ և հեղուկ նյութերի մեջ ու գաղափար կազմելու այդ նյութերի ներսում եղած մի շարք դեֆեկտների մասին։*

*Անհրաժեշտ է նշել, որ ավելի հզոր ուլտրաձայնային տատանումներ կարելի է առաջացնել անհամեմատ ավելի հեշտու-*

թյամբ, քան նույնպիսի հզորությամբ լսելի ձայնային տատանումներ։ Այս ամենը հանգեցրել է այն բանին, որ 20-րդ դարում ուլտրաձայնը արտակարգ լայն կիրառություն է ստացել գիտության ու տեխնիկայի բազմաթիվ բնագավառներում։ Այն կիրառվում է քիմիայում, բիոլոգիայում, բժշկության մեջ, մետաղական ձուլվածքների գլանման և սառը մշակման գործում, ֆիզիկայի բազմաթիվ բնագավառներում և վերջապես չափազանց լայն կիրառություն է ստանում մեր կենցաղում։

Ուլտրաձայնի տեխնիկայում ամենակարևորը հանդիսանում է ուլտրաձայնի աղբյուրների (գեներատորների) պատրաստումը։

Ուլտրաձայնային տատանումներ կարելի է ստանալ սովորականից ավելի փոքր չափերի սուլիչի օգնությամբ, որը կոչվում է Գալտոնի սուլիչ։ Այդ սուլիչը կարող է արտադրել լսելի ձայնային տատանումներից մինչև 40.000 տատանում ունեցող անլսելի ձայն։ Այժմ պատրաստել են ուլտրաձայնային այնպիսի հզոր սուլիչներ, որոնք աշխատում են խտացրած օդով և արտադրում են 55.000 տատանում մեկ վայրկյանում։

Ուլտրաձայնական սուլիչների թվին է



պատկանում նաև հեղուկային սուլիչը, որտեղ խտացրած օդը փոխարինված է հեղուկով, որի հզորությունը հասնում է մոտ 0,1 վատի, իսկ հաճախայինը՝ 4-ից մինչև 32.000 հերցի (մեկ տատանումը մեկ վայրկյանում կոչվում է մեկ հերց)։

Ուլտրաձայնի բավականին հզոր գեներատորներ են հանդիսանում ուլտրաձայնային սիրենաները, որոնք սկզբունքորեն նման են սովորական սիրենաներին (ՀՕՊ-ի ազդանշանային սիրենա), բայց հատուկ ձևափոխված են։ Դրանք բարձր ճնշման տակ արտադրում են 50.000 հերց տատանումներ ու ստեղծում են մինչև 200 վատ ակուստիկական հզորություն։

Ուլտրաձայնային հուսալի գեներատորներ են հանդիսանում նաև մագնիտոստրիկցիոն գեներատորները։

Ֆիզիկայում մագնիտոստրիկցիոն էֆեկտ է կոչվում այն երևույթը, երբ փոփոխական մագնիսական դաշտի ազդեցության տակ երկաթից և կամ հատուկ համաձուլվածքից (էլինվար) պատրաստած ձողը փոփոխական մագնիսացման պատճառով կատարում է երկայնական տատանումներ։

Եթե մագնիսական փոփոխական դաշտի տատանումները հասնում են ուլտրաձայնի

սահմանին, ապա այդ ձողը արտադրում է ուլտրաձայնային տատանումներ։

Մագնիտոստրիկցիոն գեներատորները չափազանց լայն կիրառություն ունեն տեխնիկայում։ Նման գեներատորները ծառայում են տարբեր տեսակի կարծրություն ունեցող նյութերի մակերեսների հղկման, մաքրման և մշակման համար, ինչպես նաև հեղուկ միջավայրում քիմիական ռեակցիաների արագացման, ուլտրաձայնի օգնությամբ լվացք անելու, մեքենաների մետաղական մասերի ավտոմատ մաքրման (լվացման), գործարանային և արդյունաբերական ծուխը, մուրը կոնդենսացնելու (նստեցնելու) և այլ նպատակների համար։

Ուլտրաձայնային տեխնիկայում չափազանց լայն կիրառություն ունեն նաև պիեզոէլեկտրական գեներատորները։ Այդպիսի գեներատորի տատանվող մակերես է հանդիսանում կվարցից կամ թե սեգնետյան աղից պատրաստած թիթեղները։ Այդ թիթեղներն ունեն այն հատկությունը, որ երբ նրանց վրա կիրառում ենք փոփոխական էլեկտրական դաշտ (եթե նրանց տեղավորենք կոնդենսատորի թիթեղների արանքում), ապա այդ թիթեղները կսկսեն կատարել մեխանիկական տատանումներ, հետևապես կարձակեն ձայն։



Ուլտրաձայնի կվարցային գեներատորների արտադրած հաճախությունը կարելի է հասցնել մի քանի միլիոն հերցի, բայց նրա հզորությունը փոքր է, այդ պատճառով էլ նման գեներատորները մեծապես օգտագործվում են քիմիայում, բիոլոգիայում, բժշկության մեջ, ուլտրաձայնային թերապիայում և գիտահետազոտական բազմաթիվ բնագավառներում։

Ուլտրաձայնային տատանումների արտադրման գործում կարևոր դեր են կատարում բարձր հաճախությամբ էլեկտրամագնիսական տատանումներ ստեղծող հարմարանքների (բարձր հաճախության ռադիոտեխնիկական գեներատորների) պատրաստումը։

Բարձր հաճախության ռադիոտեխնիկական գեներատորները, որոնց ստեղծած էլեկտրամագնիսական փոփոխական դաշտի ազդեցությամբ ստացվում են վերոհիշյալ մեխանիկական-ակուստիկական ուլտրաձայնային տատանումները, իրենցից ներկայացնելով սովորական ռադիոլամպերից պատրաստված ռադիոտեխնիկական համապատասխան սխեմաներ, որպիսիք կան ժամանակակից յուրաքանչյուր ռադիոընդունիչի մեջ, միայն այն տարբերությամբ, որ այս գեներատորները ավելի հզոր են, քան ռադիո-

ընդունիչները։ Հետաքրքրական է այն հանգամանքը, որ ուլտրաձայնային այս հարմարանքները բավականին փոքր ծավալ են գրավում, բայց բավականին մեծ գործեր են կատարում։

Ուլտրաձայնի կիրառությունները բազմազան են ու բազմաթիվ. այստեղ մենք կհիշատակենք նրանցից մի քանիսը։

Ուլտրաձայնի առաջին կիրառությունը պատկանում է ֆրանսիացի ֆիզիկոս, կոմունիստ Պոլ Լանժևենին, որը ուլտրաձայնը օգտագործեց սուզանավերի անվտանգ ճանապարհորդության գործում։

Ինչպես նշեցինք, ուլտրաձայնը շատ լավ տարածվում է հեղուկ ու պինդ միջավայրում, էներգիայի փոքր կորուստով։ Սուզանավում գտնված ուլտրաձայնական հարմարանքից արտադրված տատանումները հանդիպելով աննկատելի արգելքների (ծովի տակ եղած լեռների, խորտակված քաղաքների, նավերի և այլ իրերի) դրանք անդրադարձնում են ու հատուկ ապարատով տեղեկացնում ղեկավարողին այդ արգելքների ուղղության, տեղի և հեռավորության մասին ու սուզանավը փրկում վերահաս վտանգից։ Այդ գործիքը կոչվում է «էխոլոտ»։

«Էխոլոտ»-ի օգնությամբ կարելի է հայտ-



նաբերել նաև օվկիանոսներով ու ծովերով շարժվող ձկների վտառները, ձկնորսության նպատակների համար։

Ուլտրաձայնային գեներատորների օգնությամբ պատրաստում են լվացք անող մեքենաներ, որոնք զբաղեցնում են փոքր տարածություն (էլեկտրական թեյնիկի չափ), լվացքը կատարում են բավականին արագ, առանց շորը մաշելու։ Դույլի կամ լվացքի ամանի մեջ լցնում են եռացրած ջուր, օճառ և լվացքի սոդա, ապա ընկղմում են կեղտոտ շորերը, իսկ նրանց վրա են դնում ուլտրաձայնային տատանիչը։ Ուլտրաձայնը թափանցում է շորի ամենափոքր անցքերով, շարժման մեջ դնելով ջրի մոլեկուլներին, որոնք անցնելով շորի մազմզուկներով, նրան մաքրում են ամեն տեսակ կեղտից։

Ինչպես հայտնի է սովորական եղանակով ալյումինը հնարավոր չէ կպցնել (պայկա անել) որևէ այլ մետաղի հետ։ Ուլտրաձայնային տատանիչի օգնությամբ ուլտրաձայնային զոդիչը վերոհիշյալ գործողությունները կատարում է շատ արագ, սառը զոդման միջոցով։

Մետաղական ձուլվածքի մեջ թերությունների (խոռոչների) հայտնաբերման գործում մեծ կիրառություն ունի ուլտրաձայնային

դեֆեկտոսկոպը, որը ուլտրաձայնի թափանցման ընդունակության շնորհիվ կարողանում է հայտնաբերել դեֆեկտի տեղը, խորությունը, չափերը և այն ցույց տալ գործիքի էկրանի վրա։ Այդ գործիքով հնարավոր է ստուգել նաև խողովակների, մետաղական մասերի միմյանց կպցնելիս առաջացած ճեղքերը։

Ուլտրաձայնային գեներատորները օգտագործվում են նաև միզափամփուշտում գտնըվող քարերը հալեցնելու համար, քանի որ նրանց ֆոկուսացված ճառագայթները (տատանումները) կարող են բավականին հաջող քայքայել պինդ մարմինները։

Ուլտրաձայնը լայն կիրառություն է ստանում հեռուստատեսության մեջ լուսային ճառագայթը ըստ ձայնի հաճախության մոդուլացնելու (ձևափոխելու) գործում նյութերը գազազրկելու, գազը ավտոմատ անալիզի ենթարկելու, ֆոտոթիթեղների էմուլսիաների ստացման և ցանկացած նրբությամբ հաստությունները չափելու գործում։ Ուլտրաձայնի օգնությամբ պատրաստում են դժվար լսողների համար լսողության ապարատներ, ինչպես նաև ուռուցքների հայտնագործման հարմարություններ, ցենտրոֆուգաներ և ուլտրաձայնային միկրոսկոպներ։



Ուլտրաձայնական հատուկ հարմարանքների օգնությամբ հնարավոր է ապակին, հախճապակին և այլ կարծր նյութերը չափազանց հեշտ մշակել, նրանց ծակել ցանկացած ձևի և խորության անցքերով, ստուգել նրանց կարծրության աստիճանը և այլն։

Անհրաժեշտ է նշել, որ ուլտրաձայնի կիրառությունները օրըստօրե ընդլայնվում են։ Դրա զարգացման գործում զգալի բաժին ունեն սովետական գիտնականները, պրոֆեսորներ՝ Սոկոլովը և Կուդրյավցևը, Լենինգրադի ու Մոսկվայի ուլտրաձայնային կենտրոնները, որոնք շատ արժեքավոր գործեր են կատարում ուլտրաձայնի զարգացման բնագավառում։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Լենինի ծննդյան օր

ա) Վ. Ի. Լենինը կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ստեղծող:

բ) Վ. Ի. Լենինը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի մասին:

գ) Լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը ՍՍՌՄ-ում:

դ) Լենինիզմը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար աշխատավորների պայքարի դրոշն է:

ե) Մեր երկիրը վարում է տարբեր սոցիալական սիստեմների խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականություն:

զ) Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարը որպես կոմունիզմ կառուցողների համագումար:

է) Պլանավորման լենինյան սկզբունքները ՍՍՌՄ կոմունիստական շինարարության պրակտիկայում:

ը) Երկիրն ամբողջությամբ էլեկտրիֆիկացնելու մասին մեծ Լենինի գաղափարի իրագործումը:



ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953), առանձին բրոշյուր*:

Վլադիմիր Իլյիչ Լենին, *Համառոտ կենսագրություն, Հայպետհրատ, 1955*:

Հարազատների հիշողությունները Վ. Ի. Լենինի մասին, *Հայպետհրատ, 1956*:

Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, *Հայպետհրատ, 1955*:

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Լենինի մասին, *Երկեր, հատոր 6, էջ 63—76, Հայպետհրատ, 1948*:

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—65 թվականների կոնտրոլ թվերի մասին, զեկուցում *ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարում, Հայպետհրատ, 1959*:

ԿԼԱՐԱ ՑԵՏԿԻՆ— Հիշողություններ Լենինի մասին, *Հայպետհրատ, 1955*:

Լենինյան ուղիով առա՜ջ, դեպի կոմունիզմի հաղթանակը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի փետրվարի 10-ի համարում*:

## 2. ՍՄԿՊ XXI համագումարի պատմական նշանակությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի բանաձևը ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման առթիվ, *Հայպետհրատ, 1959*:

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Եզրափակման խոսք ՍՄԿԿ XXI համագումարում, *Հայպետհրատ, 1959։*

Կոմունիզմի հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի փետրվարի 3-ի համարում։*

## 3. Բարձրացնենք աշխատանքի արտադրողականությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, *Երկեր, Հատոր 27, էջ 306—310, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սոցիալիստական արդյունաբերության և տրանսպորտի զարգացման հարցերը, ՍՄԿԿ *XXI համագումարին տված զեկուցումից, առանձին գիրք, Հայպետհրատ, 1959, էջ 24—38։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Տեխնիկական առաջադիմությունը և աշխատանքի արտադրողականության աճը, *ՀԿԿ XX համագումարին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 11-ի համարում։*

Տարվա առաջին օրերից աշխատել բարձր արտադրողականությամբ. *«Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 8-ի առաջնորդողը։*



## 4. Կազմ ու պատրաստ դիմավորենք գարնանացանը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման հարցերը, *ՍՄԿԿ XXI համագումարին տված զեկուցումից, առանձին գիրք, Հայպետհրատ, 1959, էջ 38—45։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Գյուղատնտեսության հետագա վերելքը, *ՀԿԿ XX համագումարին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 11-ի համարում։*

Կազմակերպված սկսենք յոթնամյակի առաջին տարվա գարնանացանը, *«Ս. Հ.»-ի 1959 թվականի փետրվարի 13-ի առաջնորդողը։*

*Հայաստանի* Կոմպարտիայի Կենտկոմում և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետում, *որոշում սոցմրցության մեջ հաղթող ճանաչելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի մարտի 7-ի համարում։*

## 5. Երկրին տանք ավելի շատ անասնաբուծական մթերքներ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Շահումյանի* շրջանի կոլտնտեսականների դիմումը ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բոլոր աշխա-



տողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի փետրվարի 14-ի համարում։*

Նոր Բայազետի Նորադուզ գյուղի «Իլյիչի պատգամները», կոլտնտեսության անդամների դիմումը Հայկական ՍՍՌ-ի բոլոր կոլտնտեսականներին ու կոլտնտեսուհիներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի փետրվարի 27-ի համարում։*

Զարգացնենք գյուղատնտեսության աշխատողների նախաձեռնությունը, *«Ս. Հ.»-ի 1959 թվականի փետրվարի 15-ի առաջնորդողը։*

## 6. Սովետական Միությունը խաղաղության պաշտպանն է ամբողջ աշխարհում

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ խաղաղասիրական քաղաքականությունը և միջազգային հարաբերությունների հարցերը, *ՍՄԿԿ XXI համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1959։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ Մոսկվա քաղաքի Կալինինյան ընտրական օկրուգի ընտրողների ժողովում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի փետրվարի 25-ի համարում։*

ԿՈՄՅՈՒՆԻԿԵ ՍՄԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ ընկեր Ն. Ս. Խրուշչովի Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում գտնվելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի մարտի 13-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ պրես-կոնֆերանսը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի մարտի 20-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ



Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ